## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*


# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## (Նյութեր զրույցների համար)

*Սովետական Միության ժողովուրդները, ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը նախապատրաստվում են արժանավայել կերպով նշելու ՍՍՌՄ Զինված Ուժերի կազմակերպման 34-րդ տարեդարձը։*

*Սովետական Միության աշխատավորները նշանակալից տարելիցը դիմավորում են մեր երկրում կոմունիզմի կառուցման աչքի ընկնող հաջողությունների իրագործության, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման, ժողովուրդների միջև բարեկամության ու համագործակցության համար ավելի ու ավելի լայնորեն ծավալվող պայքարի պայմաններում։*

*Այժմ, երբ ամերիկյան իմպերիալիզմը իր տրամադրության տակ է համախմբում համաշխարհային ռեակցիայի սև ուժերը և տենդորեն նախապատրաստվում նոր համաշխարհային պատերազմի՝ ձգտելով հա-*

մաշխարհային տիրապետության, Սովետական Միությունը հետևողականորեն շարունակում է իր խաղաղասիրական քաղաքականությունը, որի պաշտպանության դիրքերում արթուն կանգնած են Սովետական Զինված Ուժերը։ Ամբողջ աշխարհի հասարակ մարդիկ՝ հանձինս ՍՍՌՄ Զինված Ուժերի՝ տեսնում են խաղաղության հզոր հենարանը, վստահորեն են նայում նրա արդարացիության ու հզորության վրա։

Բոլշևիկների պարտիան և անձամբ ընկեր Ստալինը կազմակերպելով և հզորացնելով Սովետական Բանակը, ոգեշնչեցին նրան անօրինակ սխրագործությունների, հասցրին մեծագույն պատմական հաղթանակների։

Սովետական Բանակն այժմ հանդիսանում է մեր ժամանակի ամենաառաջնակարգ, անպարտելի բանակը, քանի որ նա զինված է ստալինյան ռազմական գիտությամբ, ունի աշխարհում ամենակատարելագործված սպառազինություն, ամենափորձված հրամանատարություն և միայն իրեն հատուկ բարոյաքաղաքական բարձր հատկություններ։

***

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով ստեղծված աշխարհում առաջին Սոցիալիստական պետու-



թյունը, նրա հիմնադիր Վ. Ի. Լենինի ստորագրությամբ հռչակեց առաջին դեկրետը՝ հաշտության մասին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակն ու այդ հաղթանակի շնորհիվ ստեղծված Սովետական Ռեսպուբլիկայի հռչակած խաղաղության դեկրետը, կատաղի ոռնոց առաջացրին իմպերիալիստների բանակում։ Առանձնապես կատաղի ատելությամբ դիմավորեց այդ ամերիկյան իմպերիալիզմը։

Խաղաղության մասին դեկրետում Սովետական իշխանությունը առաջարկեց արդարացի հաշտություն բոլոր պատերազմող երկրներին, ժողովուրդներին ցույց տալով իմպերիալիստական սպանդի դադարեցման ուղին։ Անգլիական, ֆրանսիական իմպերիալիստները, ամերիկյան իմպերիալիստների գլխավորությամբ, որոնք շահագրգռված էին պատերազմը ձգձգելու մեջ, մերժեցին Սովետական Ռեսպուբլիկայի առաջարկությունը։

Իր «Նամակ ամերիկյան բանվորներին» նշանավոր աշխատության մեջ, 1918 թվականի օգոստոսին Վ. Ի. Լենինը գրել է. «Հենց անգլո-ֆրանսիական և ամերիկյան բուրժուազիան չընդունեց մեր առաջարկը։ Հենց նա՛ հրաժարվեց նույնիսկ խոսել մեզ

հետ ընդհանուր հաշտության մասին։ Հենց նա՛ դավաճանաբար վարվեց բոլոր ժողովուրդների շահերի նկատմամբ, հենց նա՛ ձգձգեց իմպերիալիստական սպանդը»։

ԱՄՆ-ի իմպերիալիստ կառավարողները առաջինը հանդիսացան Սովետական Ռեսպուբլիկայի նկատմամբ սովի բլոկադայի նախաձեռնողներ, ցինիկորեն հայտարարելով իրենց մամուլում, որ ամերիկյան կառավարությունը արգելել է պարենամթերք ուղարկել Ռուսաստան այնքան ժամանակ, քանի դեռ «բոլշևիկները կմնան իշխանության գլուխ և կկիրառեն հաշտություն կնքելու իրենց ծրագիրը»։

Հավատարիմ իրենց թալանչիական նպատակներին, ամերիկյան իմպերիալիստները արդեն 1918 թվականի սկզբներին ակտիվորեն նախապատրաստում էին ռազմական ինտերվենցիա մեր Հայրենիքի դեմ, այն կողոպտելու, սորկացնելու բացահայտ նպատակներով։

Ամերիկյան միլիարդատերերը, հանձինս Վիլսոնի կառավարության, սկսեցին առատորեն ֆինանսավորել հակասովետական բոլոր ուժերին։ Դեռևս 1917 թվականի դեկտեմբերին Վիլսոնի կարգադրությամբ ամերիկյան «Նեյշնլ սիտի բենկ»-ը 500 հազար դոլլար



տրամադրեց Դոնի հակառևոլյուցիոն բանդայի պարագլուխ գեներալ Կալեդինին, որը դուրս էր եկել Սովետական Ռեսպուբլիկայի դեմ։ 1918 թվականին ԱՄՆ-ը նույն գեներալին հակասովետական պայքարի համար հատկացրեց ևս 100 միլիոն դոլլար։ Չահմանափակվելով դրանով, ԱՄՆ-ը 10 միլիարդ դոլլար փոխառություն տվեց Անգլիայի, Ֆրանսիայի կառավարություններին՝ Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու համար, կազմակերպեց 13 պետությունների ռազմական արշավանքը մեր երկրի դեմ։ Դեռ ավելին. ամերիկյան զավթիչները իրենց զորքերը մտցրին Ռուսաստան, ուր նրանք կողոպտում ու այրում էին գյուղերն ու քաղաքները, գնդակահարում ու տանջամահ անում սովետական մարդկանց։

Շարունակելով վարել խաղաղասիրական քաղաքականություն, Լենինի և Ստալինի ղեկավարությամբ բոլշևիկների պարտիան ու Սովետական Կառավարությունը միաժամանակ հաշվի առան մեր Հայրենիքի դեմ ուղղված միջազգային ռեակցիայի սև ուժերի համախմբումն ու ակտիվ գործողությունները, և ձեռնամուխ եղան կազմակերպված ու կարգապահ բանակ ունենալու գործին։

1918 թվականի հունվարի 28-ին ժողո-

վրդական Կոմիսարների Սովետի նախագահ Վ. Ի. Լենինի ստորագրությամբ հրապարակվեց դեկրետ՝ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակ կազմակերպելու մասին։ Կազմակերպվեց նոր տիպի բանակ, որի առանձնահատկությունների մասին ընկեր Ստալինը ասում է.

«Կարմիր Բանակի առաջին և հիմնական առանձնահատկությունն այն է, որ նա ազատագրված բանվորների ու գյուղացիների բանակն է, նա Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բանակն է, պրոլետարիատի դիկտատուրայի բանակն է։

Մեր Կարմիր Բանակի երկրորդ առանձնահատկությունն այն է, որ նա, մեր բանակը, մեր ազգերի միջև եղած եղբայրության բանակն է, մեր երկրի ճնշված ազգերի ազատագրման բանակը, մեր երկրի ազգերի ազատությունը և անկախությունը պաշտպանող բանակն է։

Վերջապես Կարմիր Բանակի երրորդ առանձնահատկությունը։ Այդ առանձնահատկությունը մեր Բանակի մեջ ինտերնացիոնալիզմի ոգին դաստիարակելը և ամրապնդելն է, մեր ամբողջ Կարմիր Բանակին տոգորող ինտերնացիոնալիզմի ոգու առկայությունն է»։



Ստեղծվելով քաղաքացիական պատերազմի բոցերի մեջ, թշնամիների դեմ մղած ահեղ ճակատամարտերում, Կարմիր Բանակը գընալով աճեց, ամրապնդվեց և հզոր ուժ դարձավ։

Իր առաջին մարտական մկրտությունը Կարմիր Բանակն ստացավ 1918 թվականի փետրվարի 23-ին Պսկովի և Նարվայի մոտ տեղի ունեցած կռվում, ուր գլխովին ջախջախեց գերմանական հորդաներին։ Փետրվարի 23-ը հայտարարվեց Կարմիր Բանակի ծննդյան օր։

Մեծ Լենինի ոգին հաղթանակի էր ոգեշնչում մեր երկրի աշխատավորներին։ Ռազմաճակատի որ հատվածում էլ որ վտանգն ավելի սպառնալի էր, Լենինը այնտեղ էր ուղարկում իր զինակցին— Ստալինին։

«Քաղաքացիական պատերազմի բոլոր տարիները,— ասված է Ի. Վ. Ստալինի Համառոտ կենսագրությունում,— անցան Լենինի և Ստալինի սերտ համագործակցության նշանաբանով։ Նրանք ձեռք-ձեռքի տված կառուցում և ամրապնդում են Կարմիր Բանակը։ Լենինը խորհրդակցում է Ստալինի հետ Սովետական պետության քաղաքականության կարևորագույն հարցերի, ռազմական ստրատեգիայի ու տակտիկայի

հարցերի առթիվ։ ...Ստալինը Լենինի գլխավոր հենարանն էր Սովետական երկրի պաշտպանությունը կազմակերպելու և ղեկավարելու գործում»։

Լենինի ղեկավարությամբ, Ստալինի երկաթյա կամքն ու ստրատեգիական հանճարը ամենուրեք ապահովեցին Կարմիր Բանակի հաղթանակը ներքին հակառևոլուցիոն բանդաների և օտարերկրյա ռազմական հորդաների դեմ։

***

Քաղաքացիական պատերազմների հաղթական ավարտումից հետո սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ քայքայված երկրի վերականգնման գործին։ Գլխավորելով սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքը, բոլշևիկների պարտիան և Սովետական Կառավարությունը նկատի ունենալով կապիտալիստական շրջապատի թշնամական վերաբերմունքը, անդուլ կերպով հոգ էին տանում Սովետական Զինված Ուժերի հզորությունն ամրապնդելու, առաջնակարգ մարտական տեխնիկայով զինելու, հրամանատարական բարձրորակ կադրեր պատրաստելու համար։



Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ 1932 թվականին կազմակերպվեց Խաղաղօվկիանոսյան նավատորմը, իսկ 1933 թվականին Հյուսիսային նավատորմը՝ մեր երկրի ծովային սահմանների պաշտպանությունը ապահովելու համար։

Ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան քաղաքականության հաղթանակը մեր երկրում ամրապնդեց Սովետական Միության ռազմական հզորությունը, բարձրացրեց նրա պաշտպանունակությունը։

Այդ ժամանակաշրջանում մեր Բանակը մի քանի հակահարվածներ հասցրեց Սովետական պետության սահմանների վրա ոտնձգություն կատարող պետությունների զինված ուժերին։

1938 թվականին Սովետական Բանակը ճապոնական զավթիչներին ջախջախեց Խասան լճի մոտ։ 1939 թվականին Սովետական զորքերը Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի զորքերի հետ ջարդ տվին ճապոնական զավթիչներին Խալխին Գոլ գետի մոտ։ 1939 թվականին Սովետական Բանակը պատվով կատարեց իր միսիան՝ ազատագրեց Արևմտյան Ուկրաինան և Արևմտյան Բելոռուսիան։ 1939—40 թվա-

կաններին սպիտակ-ֆինների դեմ մղած պատերազմում հաղթանակ տանելով, Կարմիր Բանակը ապահովեց մեր Հայրենիքի հյուսիս-արևմտյան սահմանների անվտանգությունը։

Այսպիսով, հերոսական պայքարի ու աշխատանքի տարիներին ձեռք բերելով խոշոր հաղթանակներ տնտեսության, քաղաքականության, ռազմական հզորության բնագավառներում, սովետական ժողովուրդը ընկեր Ստալինի գլխավորությամբ երկիրը նախապատրաստում էր ակտիվ պաշտպանության։

***

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան, ուխտադրժորեն խախտելով չհարձակվելու պակտը, ներխուժեց ՍՍՌՄ-ի տերիտորիան։ Մեր սահմանների մոտ կուտակված, վարժեցված ու տեխնիկապես հագեցված գերմանական 170 դիվիզիաները, որոնք հենվում էին ֆաշիստների կողմից զավթված Եվրոպայի խոշոր հնարավորությունների և հարուստ արդյունաբերական բազայի վրա, ներխուժեցին մեր սրբազան հողը։

Մեր երկրի համար այդ ծանր օրերին՝ 1941 թվականի հունիսի 30-ին ստեղծվեց



Պաշտպանության Պետական Կոմիտե ընկեր Ստալինի գլխավորությամբ։ 1941 թվականի հուլիսի 19-ին, երբ թշնամին կատաղի գրոհով խուժում էր մեր երկրի խորքը, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ընկեր Ստալինին նշանակեց ՍՍՌՄ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար, իսկ 1941 թվականի օգոստոսին Գերագույն Սովետի Նախագահության, Ժողովրդական Կոմիսարների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ ընկեր Ստալինն ընդունեց ՍՍՌ Միության Զինված Ուժերի Գերագույն Գլխավոր հրամանատարությունը։

«Սովետական պետության ամբողջ պատմությունն այնպես է դասավորվել,— գրում է ընկեր Կ. Ե. Վորոշիլովը,— որ սովետական մարդկանց պատկերացման մեջ Ստալինի անունը միշտ կապակցվում է հաղթանակի հասկացողության հետ— լինի այդ սոցիալիստական շինարարության բնագավառում թե սովետական ժողովրդի թշնամիների դեմ ուղղված պատերազմում։ Դրա համար էլ Ստալինին ամենապատասխանատու պոստերում նշանակելը սովետական հասարակությունն ընդունեց թեթևություն զգալով, հույսով, և այդ բանը սովետական ժողովրդին լցրեց հաղթանակի

հաստատ հավատով պատմության նաև այդ ծանրագույն փորձության պահին»։

Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում ընկեր Ստալինը մեր երկրում ամեն ինչ ուղղեց թշնամու դեմ հաղթանակ տանելու նպատակին։ Բոլշևիկների պարտիան կանգնեց ֆաշիստական զավթիչների դեմ մղվող համաժողովրդական պայքարի գաղափարական ոգեշնչողի ու կազմակերպչի դիրքերում։

Գերմանիայի թիկունքում երկրորդ ռազմաճակատի ակնհայտ սաբոտաժը, անգլո-ամերիկյան հրամանատարության մանր գործողությունների ստրատեգիան, հասցրին այն բանին, որ գերմանական բանակի ամբողջ հզորությունը կենտրոնացվեց մեր երկրի դեմ։ Անգլո-ամերիկյան «դաշնակիցները» ցանկանալով հյուծել, թուլացնել Սովետական Միությանը, ուխտադրժորեն հնարավորություն տվին ֆաշիստական բանակներին երեք տարի անընդհատ առանց ետ նայելու, իրենց թիկունքում վտանգ զգալու, պատերազմ մղել միայն սովետական ռազմաճակատում։ Իսկ երբ աշխարհին հայտնի դարձավ, որ Սովետական Զինված Ուժերը սպառնալից են, նրա հարվածները անխու-



սափելիորեն մահացու են և Սովետական Միությունը մեն-մենակ ծնկի կբերի ֆաշիստական Գերմանիային ու նրա արբանյակներին, նոր այն ժամանակ պարոններ չերչիլներն ու մարշալլները ստիպված եղան երկրորդ ռազմաճակատ բացել, երկու տարի ուշացումով։

Ֆաշիստական հորդաների դեմ գոտեմարտելով մեն մենակ, Սովետական ժողովուրդը անձնուրաց աշխատանքով թիկունքում, անօրինակ սխրագործություններով ռազմաճակատում, փոխեց պատերազմի ընթացքը, որի սկիզբը անբարենպաստ էր Սովետական Միության համար։

Համառ մարտերում արյունաքամ անելով թշնամուն, Սովետական Բանակը անցավ հարձակման, ջախջախեց մինչ այդ ոմանց «անպարտելի» թվացող ֆաշիստական բանակներին, ազատեց մեր սրբազան հողը ֆաշիստական աղտեղությունից, ընդմիշտ ապահովեց մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը։ Շարունակելով զարգացնել իր հաղթանակները, Սովետական Բանակը ազատագրեց Եվրոպայի ժողովուրդներին ֆաշիստական ստրկությունից։ Սովետական Բանակի հաղթարշավի հետևանքով Լեհաս-

տանի, Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Ալբանիայի աշխատավորները հնարավորություն ստացան թոթափելու կապիտալիզմի լուծը, իրենց երկրներում ստեղծել ժողովրդական դեմոկրատական կարգեր և բռնել սոցիալիզմի ուղին։

Ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից հետո Սովետական Բանակը ջախջախեց ճապոնական ամենամեծ զորամիավորումը՝ Կվանտունյան բանակը և դրանով իսկ հնարավոր դարձրեց Ճապոնիայի պարտությունը։ Սովետական Բանակի տարած հաղթանակը Ճապոնիայի դեմ, բաց արեց արևելքի ժողովուրդների ազատության ուղին։ Այդ հաղթանակի հետևանքով չին մեծ ժողովուրդը իր վրայից թոթափեց միջազգային իմպերիալիզմի լուծը, ջախջախեց չին ժողովրդի դավաճան Չան-կայշիի կողմից գլխավորվող և ամերիկյան զենքով սպառազինված իմպերիալիստների վարձկան բանակներին և իր բախտը վերցնելով իր ձեռքը, այժմ հաջողությամբ նոր կյանք է կառուցում։ Սովետական Բանակի հաղթանակները թևավորեցին Արևելքի ժողովուրդներին։ Վյետնամի հերոս ժողովուրդը շա-



րունակելով իր ազատագրական պայքարը քայլ առ քայլ իր երկրից դուրս է մղում ֆրանսիական իմպերիալիզմի զինված ուժերին, կորեական ժողովուրդը շարունակում է ՄԱԿ-ի դրոշակի տակ իր դեմ կռվող ամերիկյան, անգլիական, ֆրանսիական և այլ խոշոր ու մանր պետությունների զորքերի դեմ իր հերոսական պայքարը, լի վճռականությամբ և հաղթանակի հավատով։



Բոլշևիկների պարտիան Սովետական Զինված Ուժերի բոլոր հաղթանակների կազմակերպողն ու ոգեշնչողն է։ Հայրենական պատերազմի հենց առաջին օրերից, սովետական ժողովուրդը վտանգի դեմ հանդիման է՛լ ավելի համախմբվեց բոլշևիկների պարտիայի ու իր սիրելի առաջնորդ Ստալինի շուրջը, և իր համար վաստակեց հերոսական ժողովրդի անունը։

«Հայրենական պատերազմի օրերին պարտիան մեր առաջ կանգնեց,— ասում է ընկեր Ստալինը,— որպես ֆաշիստական զավթիչների դեմ մղվող համաժողովրդական պայքարի ոգեշնչողն ու կազմակերպողը։ Պարտիայի կազմակերպչական աշխատանքը միա-

*վորեց և դեպի ընդհանուր նպատակն ուղղեց սովետական մարդկանց բոլոր ջանքերը, ենթարկելով մեր բոլոր ուժերն ու միջոցները թշնամու ջախջախման գործին»։*

*Բոլշևիկների պարտիայի անդամները Սովետական Զինված Ուժերի շարքերում սիստեմատիկաբար տանելով գաղափարական-քաղաքական աշխատանք, ամրացնում են մեր մարտիկների հավատն իրենց գործի մինչև վերջը արդարացի լինելու մասին, ամրապնդում են հավատն իրենց ուժերի նկատմամբ, զինում են նրանց աշխատավորների շահերի համար պայքարելու անխորտակելի կամքով։*

*Սովետական Զինված Ուժերի շարքերում բոլշևիկների պարտիան աճեցրել է աշխարհի ժողովուրդներին հայտնի զորավարներ, ստալինյան հրամանատարություն։*

*Սովետական Զինված Ուժերի գոյության ամբողջ ժամանակաշրջանում, նրա մղած ճակատամարտերում, կոմունիստները գլխավորելով մղվող կռիվները, գրոհել են թշնամու վրա մարտակարգերի առաջին շարքերում։*

*Բոլշևիկների պարտիայի առաջնորդ ընկեր Ստալինը Սովետական Զինված Ուժերի ծագման ու զարգացման հետ միասին*





*ստեղծեց սովետական ռազմական գիտությունը, որ իրավամբ կոչվում է Ստալինյան։*

*Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում ընկեր Ստալինը է՛լ ավելի առաջ մղեց ու հարստացրեց սովետական ռազմական գիտությունը։ Առանձնապես նշանակալից եղան գործող ֆակտորների հանճարեղ բացահայտումը, այդ ֆակտորների բաժանումը՝ ժամանակավոր, անցողիկ և մշտապես գործող խմբերի, որոշելով դրանցից յուրաքանչյուրի դերն ու նշանակությունը և դրանց փոխադարձ կապը։*

*Անցողիկ, ժամանակավոր ֆակտորներից ընկեր Ստալինը առանձնապես նշեց «հանկարծակիության մոմենտը», որի վրա հենվում էր գերմանական ֆաշիզմը։ Մշտապես գործող ֆակտորների խմբին, որոնց վրա հենվում էր Սովետական իշխանությունը, և որոնք որոշում են պատերազմի ելքը, ընկեր Ստալինը դասեց՝ թիկունքի ամրությունը, բանակի բարոյական ոգին, դիվիզիաների քանակն ու որակը, բանակի սպառազինությունը, հրամանատարական կազմի կազմակերպական ընդունակությունները։*

*Կանխատեսելով գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի անխուսափելի կործանումը, ընկեր Ստալինը զինեց սո-*

վետական մարդկանց հաղթանակ տանելու գիտությամբ, առաջնորդեց նրանց դեպի մարտ, դեպի հաղթանակ։

«Այդ մեր երջանկությունն է,— ասում է ընկեր Մոլոտովը,— որ պատերազմի դժվար տարիներին Կարմիր Բանակին ու սովետական ժողովրդին առաջ էր տանում Սովետական Միության իմաստուն և փորձված առաջնորդ Մեծ Ստալինը։ Գեներալիսիմուս Ստալինի անունով մեր երկրի պատմության և համաշխարհային պատմության մեջ կմտնեն մեր Բանակի փառավոր հաղթանակները»։

***

Երկրորդ համաշխարհային պատերազմի հաղթական ավարտման հետևանքով է՛լ ավելի նշանակալից դարձավ ՍՍՌՄ-ի դերը միջազգային կյանքում։ Սովետական Միության շուրջը համախմբվեցին ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ կազմելով խաղաղության ու դեմոկրատիայի հզոր լագերը, որին հարեց աշխարհի պրոգրեսիվ ողջ մարդկությունը։

Պաշտպանելով խաղաղության ու դեմոկրատիայի գործը, ինչպես Սովետական Միության, այնպես էլ ժողովրդական դե-



մոկրատիայի երկրներին խորթ են իմպերիալիստական ձգտումները։ Նրանց նպատակն է ապահովել իրենց ժողովուրդների համար խաղաղ պայմաններ և իրավահավասար, բարեկամական հարաբերություններ՝ մյուս ժողովուրդների հետ։

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո, սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերի դեմ կանգնեց ամերիկյան իմպերիալիզմի կողմից գլխավորվող պատերազմի ու ռեակցիայի լագերը։ Մարտի դաշտերում միլիոնավոր զոհերի արյունը դեռ չսառած, նրանք սկսեցին նյութել նոր պատերազմ։ ԱՄՆ-ի, Անգլիայի կառավարող շրջանները կազմակերպում են ագրեսիվ բլոկներ, ռազմական բազաներ, վերականգնում են արևմտյան Գերմանիայի և Ճապոնիայի ռազմական պոտենցիալը։ Նրանք պատրաստվում են նոր պատերազմի ՍՍՌՄ-ի ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ, պատրաստվում են աշխարհի ժողովուրդներին կրկին նետելու համաշխարհային սպանդի և աղետների մեջ։

ԱՄՆ-ի ռազմական ծախսերը 1951—1952 թ. թ. կազմում են 81,8 միլիարդ դոլլար, այսինքն 76 անգամ ավելի, քան նախապա-

տերազմյան տարիներին։ Նրա զինված ուժերի անձնակազմի թիվը այժմ հասնում է երեք ու կես միլիոն մարդու։

Ամերիկյան ու անգլիական կառավարողները, հանդես գալով Սովետական Միության դեմ ամեն կարգի սուտ զրպարտություններով, իրենց ներկայացնելով «խաղաղության» կողմնակիցներ, իրականում դեմ են դուրս գալիս սպառազինությունների կրճատման, ատոմային զենքի արգելման, Կորեայում զինադադար կնքելու՝ Սովետական Միության կողմից շարունակաբար արվող բոլոր առաջարկություններին։ Նրանք ստորագրում են օրինագծեր ՍՍՌՄ-ի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ դիվերսիայի, լրտեսության, մարդասպանության ֆինանսավորման համար։

Միջազգային ռեակցիայի մոլեգնության պայմաններում, ՍՍՌՄ-ը վստահ իր Զինված Ուժերի վրա, շարունակում է իր տրադիցիոն խաղաղասիրական քաղաքականությունը։

«Մենք,— ասում է Լ. Պ. Բերիան,— խաղաղության համար հաստատակամորեն պայքարում ենք ոչ միայն այն պատճառով, որ մեզ հարկավոր չէ պատերազմ, այլ և այն պատճառով, որ սովետական ժողովուրդը, ո-



րը Լենինի—Ստալինի դրոշի ներքո իր մոտ ստեղծել է ամենաարդարացի հասարակակարգը, ագրեսիվ պատերազմը համարում է ամենածանր հանցագործություն մարդկության դեմ, ամենամեծ աղետը ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց համար։ Բայց եթե իմպերիալիստական գիշատիչները մեր ժողովրդի խաղաղասիրությունը մեկնաբանեն որպես նրա թուլության նշան, ապա նրանց սպասում է է՛լ ավելի խայտառակ ձախողում, քան այն, որին ենթարկվեցին նրանց նախորդները Սովետական պետության դեմ ուղղված ռազմական ավանտյուրաներում»։

Ձեռնամուխ լինելով խաղաղ ստեղծարար աշխատանքի, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարելով հետպատերազմյան հնգամյակը, նորանոր նվաճումներ ձեռք բերեց 1951 թվականին։ Կենտրոնական Վիճակագրական Վարչության օրերս հրապարակած հաղորդագրությունից երևում է, որ սովետական ժողովուրդը վիթխարի հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության, արվեստի ու կուլտուրայի զարգացման, ինչպես նաև ժո-

ղովրդի կենսամակարդակի է՛լ ավելի բարձրացման բնագավառում։

Ղեկավարվելով Լենինի—Ստալինի ցուցումներով, բոլշևիկների պարտիան ու Սովետական Կառավարությունը երկրի հիմնական ռեսուրսները և ուժերը ներդնելով կոմունիզմի կառուցմանը, դրա համար միաժամանակ հոգ են տանում է՛լ ավելի ամրապնդելու մեր Հայրենիքի պաշտպանունակությունը, բարձրացնելու Սովետական Բանակի մարտական հզորությունը։

«Իհարկե,— ասում է ընկեր Ստալինը,— ագրեսորներն ուզում են, որպեսզի Սովետական Միությունը անզեն լինի՝ իր վրա նրանց հարձակման դեպքում։ Բայց Սովետական Միությունը դրան համաձայն չէ և կարծում է, որ ագրեսորին պետք է դիմավորել լիակատար պատրաստությամբ»։

Սովետական ռազմիկները, զինված Ստալինյան ռազմական գիտությամբ, հայրենական առաջնակարգ տեխնիկայով, որպես ահեղ ուժ կանգնած են խաղաղության պաշտպանության դիրքերում։ Սովետական ժողովուրդը վստահ իր Զինված Ուժերի վրա, խաղաղ աշխատանքով ձեռք է բերում նորանոր հաջողություններ կոմունիզմի կառուցման ճանապարհին։

---

ԿԱԶՄԱԿԵՐՊԻՐ ԶՐՈՒՅՑ

# ՎՐԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Վրաց ժողովուրդը, Սովետական Միության ժողովուրդները նախապատրաստվում են նշելու Վրաստանում Սովետական կարգերի հաստատման 31-րդ տարեդարձը։

31 տարի առաջ, 1921 թվականի փետրվարի 25-ին Վրաստանի աշխատավոր ժողովուրդը, բոլշևիկների փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի օրինակով ու անմիջական օգնությամբ տապալեց մինչև ուղն ու ծուծը ռեակցիոն մենշևիկյան տիրապետությունը։ Վրաստանի մենշևիկները, Վրաստանի բազմադարյան պատմության մեջ կատարեցին ամենանողկալի դերը, իրենց տիրապետության ժամանակ Վրաստանն անջատեցին ռևոլյուցիոն Ռուսաստանից և ենթարկեցին իմպերիալիստական տերությունների կրկնակի ճնշմանն ու շահագործմանը։

Լենինի և Ստալինի ցուցումներով վրաց ժողովուրդը, իր երկրից դուրս վռնդեց իմպե-

րիալիստական զինված բանդաներին, տապալեց մենշևիկյան կառավարությունը, կապիտալիստների, կալվածատերերի, իշխանների տիրապետությունը։

Հաստատելով իր երկրում Սովետական իշխանություն, դրանով վրաց ժողովուրդը ավարտեց իր ազատության ու անկախության համար մղած բազմադարյան պայքարը և բռնեց սոցիալիզմի ուղին։

Սովետական իշխանության տարիներին Վրաստանի բոլշևիկները, կենսագործելով ընկեր Ստալինի ցուցումները, Գ. Կ. Օրջոնիկիձեի և ապա Լ. Պ. Բերիայի գլխավորությամբ, հողմացրիվ արեցին նացիոնալ-ուկլոնիզմը, ամերիկյան, անգլիական, գերմանական ագենտուրան։

Անցած 31 տարիների ընթացքում, բոլշևիկների պարտիայի ինդուստրացման քաղաքականության շնորհիվ, Վրաստանում կազմակերպվեցին արդյունաբերական նոր ճյուղեր՝ մեքենաշինական, մետալուրգիական, էլեկտրամետալուրգիական, նավթամշակման, քիմիական և այլն։

Կենսագործելով Լենինի և Ստալինի ցուցումները, Վրաստանի աշխատավորները շատ բան են արել իրենց հիդրոէներգետիկ անսպառ հնարավորությունները օգտագոր-



ծելու ուղղությամբ։ Կառուցվել են տասնյակ հիդրոէլեկտրակայաններ, որոնց թվում՝ Հրամա Ջագէսը, Ռիոնգէսը, Խրամգէսը և այլն։

Վրաստանի սոցիալիստական արդյունաբերությունը առանձին թափ ու ծավալ ստացավ հետպատերազմյան ժամանակաշրջանում. կառուցվեցին նոր հիդրոէլեկտրակայաններ, մետալուրգիական, մեքենաշինական, տեքստիլ, թեթև, սննդի և այլ արդյունաբերական ճյուղերի արտադրական ձեռնարկություններ։

Վրաստանի աշխատավորությունը իր ազատագրության 31-րդ տարեդարձը նշանավորում է կոմունիզմի մեծ կառուցումների պատվերների կատարման գործում ձեռք բերած նշանակալից նվաճումներով։ Վրացական ՍՍՌ-ն կոմունիզմի կառուցումներին ուղարկում է դազգահներ, ճշգրիտ չափող գործիքներ, արտեզյան տուրբոպոմպեր և այլն։

Փայլուն հաջողությունների հասավ Վրաստանի աշխատավորությունը սոցիալիստական գյուղատնտեսության տեխնիկական զինվածության, նոր հողերի յուրացման, սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի արմատավորման, բերքատվության բարձրացման ուղղությամբ։

Առանձնապես մեծ են Վրաստանի կոլտնտեսությունների ու սովխոզների հաջողությունները բարձրարժեք կուլտուրաների՝ թեյի, ցիտրուսների, ծխախոտի մշակման բնագավառում: Մեծ զարգացման են հասել այգեգործությունն ու գինեգործությունը: Աճել են ոռոգելի հողերի տարածությունները: Մեծ աշխատանքներ են տարվում Կոլխիդայի վատառողջ ճահճուտների չորացման ուղղությամբ:

Գյուղի սոցիալիստական վերակառուցման շնորհիվ օրեցօր հարստանում ու կազմակերպչորեն ամրապնդվում են Վրաստանի կոլտնտեսությունները: Դեռևս 1950 թվականին, Վրաստանում կար 315 միլիոնատեր կոլտնտեսություն:

Աննախընթաց վերելք է ապրում վրաց ժողովրդի բազմադարյան կուլտուրան: Վրաստանը համարվում է համատարած գրագիտության երկիր: Մինչև ռևոլյուցիան Վրաստանում ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն չկար: Այժմ գործում են 21 ԲՈՒՀ: Վրաստանում աշխատում են բազմահազար առաջավոր ինտելիգենտական կադրեր: Գիտական կադրերի աճման շնորհիվ 1940 թվականին հիմնադրվեց Վրացական ՍՍՌ Գիտությունների ակադեմիա, որն այժմ



միավորում է ավելի քան 42 գիտա-հետազոտական հիմնարկություն:

Վրաց ժողովուրդն իրավամբ հպարտանում է իր ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայով, որ ծաղկել է բոլշևիկյան գաղափարայնության, ճշմարտության և բարձր վարպետության համար մղվող պայքարում:

Սովետական իշխանության տարիներին լիովին վերափոխվել են Վրաստանի գյուղերն ու քաղաքները: Սոցիալիստական վեհաշուք քաղաք է դարձել նրա մայրաքաղաքը՝ Թբիլիսին, իր բազմահարկ ճարտարապետական կառուցվածքներով, լայն ու ասֆալտապատ փողոցներով, պուրակներով ու կանաչապատ տարածություններով:

Վրացական ՍՍՌ-ն դարձել է Սովետական Միության աշխատավորների ամենալավագույն առողջարաններից մեկը: Բազմաթիվ սանատորիաներ, հանգստյան տներ զարդարում են ռեսպուբլիկան, ուր ամեն տարի Սովետական Միության տարբեր վայրերից հազարավոր մարդիկ են գալիս հանգստանալու և բուժվելու:

Տնտեսական, քաղաքական աննախընթաց հաջողություններով են դիմավորում նշանակալից տարեդարձը նաև Աբխազական և Ա-

չարական ավտոնոմ ռեսպուբլիկաների, Հարավ-Օսեթական ավտոնոմ մարզի աշխատավորները։

Սովետական Վրաստանի 31 տարիների անընդմեջ հաջողությունները ձեռք են բերվել ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան բարեկամության շնորհիվ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, Անդրկովկասի եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորների սերտ համագործակցության պայմաններում։

Հայ և վրաց ժողովուրդների բարեկամությունն ունի դարերի պատմություն։ Հազարավոր տարիների ընթացքում նրանք միասին են պայքարել իրենց երկրների ազատության ու անկախության համար։ Պատմությանը հայտնի են հայ և վրաց ժողովուրդների համատեղ ելույթները, սկսած 5-րդ դարից՝ շահական Պարսկաստանի, արաբական խալիֆաթի, թուրք-սելջուկների, մոնղոլ-թաթարների, օսմանյան թյուրքերի դեմ։

Հայ, վրաց և ադրբեջանական ժողովուրդները սովետական Ռուսաստանի զինված ուժերի օգնությամբ թոթափեցին օտար նվաճողների դարավոր լուծը։

19-րդ դարում կապիտալիզմի զարգացման հետ, Անդրկովկասում պատմության բեմ ի-



ջավ բանվոր դասակարգը, որը սկզբից նեթ տոգորվելով Լենինի և Ստալինի ազգամիջյան եղբայրության գաղափարներով, կանգնեց ինտերնացիոնալիզմի ուղու վրա։

Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում, Սովետական կարգեր հաստատվելուց հետո, նոր սոցիալ-քաղաքական պայմաններ ստեղծվեցին Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների համագործակցության համար։ Անդրֆեդերացիայի կազմակերպումից հետո, նրա գոյության տարիներին, ինչպես նաև հետագայում, ցեմենտվեց Հայաստանի, Ադրբեջանի, Վրաստանի ժողովուրդների դարավոր բարեկամությունը, որը շարունակվում է օր ավուր ծաղկել ու բարգավաճել։

Իր վերածննդի 31-րդ տարեդարձը վրաց ժողովուրդը նշում է ավելի կուռ համախմբված Լենինի—Ստալինի պարտիայի շուրջը, արտահայտելով իր անհուն սերն ու նվիրվածությունը ժողովուրդների մեծահանճար առաջնորդ ընկեր Ստալինի նկատմամբ։

Սովետական Միության ժողովուրդների շարքերում ամուր կանգնած լինելով խաղաղության դիրքերում, վրաց ժողովուրդը ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի կառուցման գործին։

Ս. ԽՐԽՄՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԸ

*Սովետական Միության խաղաղասեր և ստեղծագործ ժողովուրդը խանդավառությամբ ընդունեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին։*

*ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի 1951 թվականի տարեկան պլանը, ամբողջությամբ վերցրած, կատարվել է 103,5 տոկոսով և 1950 թվականի համեմատությամբ աճել է 16 տոկոսով։*

*Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է. չուգունինը՝ 14, պողպատինը՝ 15, գլանվածքինը՝ 15, ածխինը՝ 8, նավթի-*



*նը՝ 12, բենզինինը՝ 20, դիզելային վառելիքինը՝ 45, էլեկտրաէներգիայինը՝ 14, էլեկտրամոտորներինը՝ 24, տրակտորային շարքացաններինը՝ 15, տրակտորային կուլտիվատորներինը՝ 17, ավտոբուսներինը՝ 34, սինթետիկ կաուչուկինը՝ 20 տոկոսով և այլն։*

*Սովետական Միության աշխատավորությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելի ստացավ. բամբակյա գործվածքներ՝ 22, բրդյա գործվածքներ՝ 13, մետաքսյա գործվածքներ՝ 34, գուլպեղեն՝ 26, կաշվե-կոշկեղեն՝ 177, ձուկ՝ 22, միս՝ 12, երշիկեղեն՝ 17, կաթնամթերքներ՝ 44, շաքար՝ 18 տոկոսով և այլն։*

*Սովետական Միության աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը այն մասին, որ հաջողությամբ կատարվել են Վոլգայի, Դոնի ու Դնեպրի վրա հիդրոտեխնիկական խոշոր կառուցվածքների շինարարության, ինչպես նաև Գլխավոր Թուրքմենական ջրանցքի շինարարության 1951 թվականի համար սահմանված պլանային առաջադրանքները։ Հայրենական արդյունաբերությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, թողարկեց ավե-*

լի-խոշոր հիդրոտուրբիններ՝ 145, տուրբոգեներատորներ՝ 111, հիդրոգեներատորներ՝ 93, խոշոր էլեկտրական մեքենաներ՝ 37 տոկոսով և այլն։ Ստալինյան մեծ կառուցումների համար թողարկվել են մեծ թվով հզոր հողամուղ և հող հանող մեքենաներ, մեկ շերեփանի քայլող և բազմաշերեփ բարձր արտադրողականություն ունեցող էքսկավատորներ, հզոր բետոնախառնիչներ, 25 տոննանոց բեռնատար ավտոմեքենաներ և այլն։

1951 թվականին նոր հաջողությունների հասավ սոցիալիստական գյուղատնտեսությունը, հողագործության և անասնապահության զարգացման, ինչպես նաև կոլտնտեսությունների կազմակերպչական-տնտեսական ամրապնդման բնագավառներում։

Չնայած Պովոլժյեի, Արևմտյան Սիբիրի, Ղազախստանի և մի քանի այլ շրջաններում եղանակի անբարենպաստ պայմաններին, հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7.400 միլիոն փութ։ 1951 թվականին ցորենի, տարեկանի, բամբակի հումքի և շաքարի ճակնդեղի բերքը գերազանցեց 1950 թվականի բերքին։

1951 թվականին բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները, 1950 թվականի



համեմատությամբ, ավելացավ 6,7 միլիոն հեկտարով։

1951 թվականին է՛լ ավելի ամրապնդվեց գյուղատնտեսության տեխնիկական բազան։

Սոցիալիստական գյուղատնտեսությունը 1951 թվականին ստացավ 137 հազար տրակտոր՝ փոխադրած 15 ուժանոցի, 53 հազար հացահատիկային կոմբայն։ ՄՏ կայանները 1951 թվականին 19 տոկոսով ավելի աշխատանք կատարեցին կոլտնտեսություններում, քան 1950 թվականին։ 1951 թվականին կոլտնտեսություններում զգալիորեն ավելացավ էլեկտրաէներգիայի օգտագործումը։

1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, կոլտնտեսություններում հանրային անասունների գլխաքանակը ավելացավ, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 12, ոչխարներինն ու այծերինը՝ 8, խոզերինը՝ 26, ձիերինը՝ 8 տոկոսով։ Անասունների ընդհանուր գլխաքանակը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացավ համարյա 14 միլիոն գլխով։

1951 թվականին նոր հաջողությունների հասան երկաթուղային, ջրային և ավտոմոբիլային տրանսպորտի բնագավառի աշխատողները։ Երկաթուղային տրանսպորտի գլ-

ծով բեռնաշրջանառությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց՝ 12, գետային տրանսպորտի բեռնաշրջանառությունը՝ 13, ծովային տրանսպորտինը՝ 8, ավտոտրանսպորտինը՝ 20 տոկոսով։

Հայրենական արդյունաբերությունը 1951 թվականին ժողովրդական տնտեսությանը հանձնեց մոտ 500 նոր, կարևորագույն տեսակների մեքենաներ ու սարքավորումներ, որոնք էլ ավելի թափ են հաղորդելու ժողովրդական տնտեսության հետագա տեխնիկական առաջընթացին։ Դազգահաշինական արդյունաբերությունը յուրացրեց մոտ 150 տեսակի բարձր արտադրողականության մետաղահատ դազգահներ և դարբնոցային մամլող նոր սարքավորումներ։

1951 թվականին արդյունաբերության գործադրմանը հանձնվեցին բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մոտ 700 հազար գյուտեր ու ռացիոնալիզատորական առաջարկություններ։

1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ժողովրդական տնտեսության ընդարձակման համար պետական կապիտալ ներդրումները ավելացան 12 տոկոսով, ընդ որում էլեկտրաշինարարության մեջ ներդր-



ված կապիտալը ավելացավ 40, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 35, բնակարանային շինարարության մեջ՝ 20 տոկոսով և այլն

1951 թվականին կառուցվեցին 27 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դրանից, գյուղական վայրերում կառուցվեցին 400 հազար բնակելի տներ։

1951 թվականին ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացավ 1.600 հազար մարդով և կազմեց 40,8 միլիոն մարդ։ Արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի արտադրողականությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ աճեց 10 տոկոսով։

ՍՍՌՄ ազգային եկամուտը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 12 տոկոսով։ Ազգային եկամտի նման աճը հնարավոր դարձրեց զգալիորեն բարելավել աշխատավորների նյութական դրությունը և ապահովել սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունը քաղաքում և գյուղում։

1951 թվականին բանվորների, գյուղացիների և ծառայողների եկամուտները, 1950

թվականի համեմատությամբ, համադրելի գներով ավելացան 10 տոկոսով։

ՍՍՌՄ-ում սովորողների թիվը, ներառյալ ուսման բոլոր տեսակները, 1951 թվականին կազմել է 57 միլիոն մարդ։ 1951 թվականին 887 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորել են 1.356 հազար ուսանողներ, 3543 տեխնիկումներում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորել են 1.384 հազար մարդ։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում սովորողների թիվը 1951 թվականին գերազանցում էր 1950 թվականին ուսուցման նույն սիստեմներում սովորողների քանակին 194 հազար մարդով։

1951 թվականին գիտության, գյուտարարության, գրականության ու արվեստի ասպարեզում աչքի ընկնող աշխատանքների համար, Ստալինյան լաուրեատի կոչման արժանացան 2694 մարդ։

1951 թվականին 5 միլիոնից ավելի երեխաներ հանգստացան պիոներական ճամբարներում և սանատորիաներում։

Սոցիալիստական ապահովության և ապահովագրության գծով մեր երկրի աշխատա-



վորները պետության հաշվին 1951 թվականին ստացան 125 միլիարդ ռուբլի։

1951 թվականի ընթացքում սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում ձեռք բերված հաջողությունները արդյունք են մեր երկրի աշխատավորների նըվիրմամբ ժողովուրդների իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի հայրական հոգատարության, բոլշևիկների պարտիայի ոգեշնչող, մոբիլիզացնող իմաստուն քաղաքականության, սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծագործ աշխատանքի։

Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը ոգեշնչված իր ձեռք բերած նվաճումներով, է՛լ ավելի նոր եռանդով շարունակում է կոմունիզմի կառուցման գործը, օրըստօրե բարձրացնում մեր մեծ Հայրենիքի հզորությունը, նրա պաշտպանունակությունը, ամրապնդում խաղաղության գործը ամբողջ աշխարհում։

# ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

## Թվեր ու փաստեր

*Թևակոխելով նոր տարին՝ 1952 թվականը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները հսկայական գոհունակությամբ ու հպարտությամբ են նշում նոր կյանքի կառուցման գործում ձեռք բերած իրենց հաջողությունները։ Սովետական Միության բարեկամական, եղբայրական աջակցությամբ, այդ երկրների ժողովուրդները ձեռք բերեցին իրենց էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման նոր, ավելի բարձր ցուցանիշներ։*

***

*1951 թվականը* Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի *աշխատավորների համար՝ արտադրական մրցությունը լայն թափով ծավալելու տարի էր։ Մրցությունը նշանավորվեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում և հատկապես ծանր արդյունաբերության բնագավառում ձեռք բերած խոշոր հաջողություններով։ Անցած տարում չուգունի արտադրությունը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացավ ավելի քան 2 անգամ, իսկ պողպատի ձուլումը՝ 65 տոկոսով։ Չինաստանի մեքենաշինական արդյունաբերությունը երկու տարվա ընթացքում յուրացրեց արտադրանքի ավելի քան 270 կարևորագույն տեսակների արտադրությունը։*



*Չինական գյուղացիությունը մեծ ոգևորությամբ է աշխատում։ 1951 թվականին զգալիորեն ընդարձակվեց ցանքատարածությունը և ավելացավ բերքատվությունը։ Այսպես՝ Հյուսիս-Արևելյան Չինաստանում 1951 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքը 7 տոկոսով գերազանցեց նախորդ տարիների ամենաբարձր բերքատվության չափը։ 1951 թվականին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում բամբակի այնպիսի բերք ստացվեց, որը ամենաբարձրն է երկրի պատմության մեջ։*

*1951 թվականին զգալիորեն բարձրացավ չին ժողովրդի բարեկեցությունը։ «Ջանցզյանժիբաո» թերթը վերջերս գրել է. «Անցած տարում համարյա մեկ երրորդով աճեց մեր երկրի քաղաքացիների գնողունակությունը»։ Չինաստանում այժմ գործում է ավելի քան 440 հազար տարրական դպրոց, որտեղ սո-*

վորում է ավելի քան 37 միլիոն մարդ։ Չինական ժողովրդի կուլտուրայի աճը գրքերի, թերթերի և ամսագրերի չտեսնված պահանջ է առաջացրել։

***

Ժողովրդական Լեհաստանում 1951 թվականը տնտեսական զարգացման և սոցիալիզմի հիմքերի կառուցման վեցամյա պլանի երկրորդ տարին էր։ Այդ տարում գործարկվեցին մեծ թվով նոր գործարաններ, ֆաբրիկաներ, ցեխեր։ Նոյեմբերին գործարկման հանձնվեցին ավտոմոբիլային երկու գործարանների առաջին հերթերը՝ Վարշավայում և Լյուբլինում։ Կոստյուշկոյի անվան մետալուրգիական գործարանում շահագործման հանձնվեց դոմենյան նոր հնոցը, իսկ Չենստոխովի մետալուրգիական գործարանում՝ պողպատաձուլական նոր ցեխը։ Լայն ճակատով ծավալվում են «Նովայա Գուտա» մետալուրգիական հսկա գործարանի կառուցման աշխատանքները, գործարան, որը կտա այնքան մետաղ, որքան տալիս էր նախապատերազմյան Լեհաստանի ամբողջ մետալուրգիական արդյունաբերությունը։

Անցած տարում Լեհաստանում շինարարություն էր կատարվում 2600 շինհրապարա-



կում։ Արդյունաբերական շինարարության մինիստրությունը տարեկան պլանը կատարեց դեռ նոյեմբերին։ Դեկտեմբերի սկզբներին շահագործման հանձնվեց արդյունաբերական 1500 նոր շենք։ Իր ազատ կյանքի յոթ տարիներին Լեհաստանը 3,5 անգամ ավելացրեց արդյունաբերության արտադրությունը։

Էկոնոմիկայի վերելքին զուգընթաց աճում են ժողովրդի բարեկեցությունն ու կուլտուրան։ 1951 թվականը ժողովրդական Լեհաստանում նշանավորվեց անգրագիտության՝ բուրժուա-կալվածատիրական կարգերի թողած այդ ծանր ժառանգության վերացումով։ Ժողովրդական Լեհաստանի 72 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է 120 հազար ուսանող, այսինքն՝ երկու և կես անգամ ավելի, քան 1939 թվականին։

***

Բուլղարական Դիմիտրովգրադ քաղաքում, որը վերջերս է հիմնադրվել, 1951 թվականի նոյեմբերին աշխատել սկսեցին սոցիալիստական նոր հզոր ձեռնարկություններ, այն է՝ Ստալինի անվան քիմիական կոմբինատը և Վիլկո Չերվենկովի անվան ջերմաէլեկտրացենտրալը։ Ստալինի անվան կոմբինատը՝

բալկանների այդ ամենախոշոր քիմիական ձեռնարկությունը, տարեկան կարտադրի 70 հազար տոննա ազոտային պարարտանյութ։ 1951 թվականին կառուցված էլեկտրակայանների կարողությունը 40 տոկոսով գերազանցում է բոլոր այն էլեկտրակայանների կարողությունը, որոնք երկրում ստեղծվել են վերջին 60 տարիների ընթացքում։

Երկրի ինդուստրացումն ու էլեկտրիֆիկացումը տալիս են իրենց հիանալի արդյունքները։ Նախնական տվյալներով 1951 թվականին Բուլղարիայում 4 անգամ շատ արդյունաբերական արտադրանք է թողարկվել, քան նախապատերազմյան 1939 թվականին։ Իսկ ծանր ինդուստրիան նույն այդ ժամանակամիջոցում արտադրանքի թողարկումն ավելացրեց հինգ անգամ։ Մի քանի անգամով աճել է լայն սպառման ապրանքների արտադրությունը. և վերացված է քարտային սիստեմը։



Ժողովրդա-դեմոկրատական Հունգարիայի արդյունաբերությունը զարգանում է արագ տեմպերով։ 1951 թվականի տասն ամսում արդյունաբերական արտադրանքի թողարկու-



մը, 1950 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացավ համարյա 30 տոկոսով։ Ներկայումս Հունգարիայում արդյունաբերական արտադրության մակարդակը երկու և կես անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։

1951 թվականին Հունգարիայում շարք մտան արդյունաբերական մի շարք նոր ձեռնարկություններ։ Իր առաջին հոսանքը տվեց Ինոտայում կառուցված ջերմաէլեկտրացենտրալը։ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձի օրը արտադրանք սկսեց տալ Դունայի Ստալինի անվան կառուցվող մետալուրգիական կոմբինատի առաջին ձուլարանի ցեխը։



Նոր տարին՝ 1952 թվականը խաղաղ աշխատանքի ճակատում տարած մեծ հաղթանակներով դիմավորեցին Չեխոսլովակիայի աշխատավորները։ Պրագայի մարզում տարեկան պլանները կատարեցին 750 ձեռնարկություն, Սլովակիայում՝ մոտ 300, Լիբերեցի մարզում՝ ավելի քան 390 ձեռնարկություն և այլն։

Նախնական տվյալներով՝ անցած տարում

Չեխոսլովակիայի արդյունաբերական արտադրությունը, 1950 թվականի համեմատությամբ աճեց մոտ 13 տոկոսով և երկու երրորդով ավելի էր, քան նախապատերազմյան 1937 թվականինն։

Ռեսպուբլիկայում հսկայական շինարարություն է կատարվում։ Նոր տարվա առաջին օրը գործել սկսեց Գոտվալդյան կառուցվող, Եվրոպայի խոշորագույն մետալուրգիական կոմբինատներից մեկի առաջին դոմնան։

❊❊❊

Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայում տարեկան առաջադրանքները ժամկետից շուտ կատարեցին ավելի քան 1200 արդյունաբերական ձեռնարկություն և նորակառույց։ 1951 թվականին գործել սկսեց Խունեդոարի մետալուրգիական կոմբինատի նոր հզոր դոմենյան հնոցը, շարք մտավ Բուխարեստի պոլիգրաֆ կոմբինատի առաջին հերթը։ Լայն ծավալ է ստացել Դունայ—Սև ծով ջրանցքի, Բիստրիցա գետի վրա կառուցվող Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանի, ինչպես նաև երկրի մի շարք այլ նոր ձեռնարկությունների կառուցման աշխատանքը։ Նշանակալի հաջողություններ է ձեռք բերել ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Անցյալ տարի Ռումինիայում հիմնական կուլտուրաների բերքը 51 տոկոսով գերազանցեց 1950 թվականի բերքատվության չափը։



❊❊❊

Անցած տարում խոշոր հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդա-դեմոկրատական Ալբանիայի աշխատավորները։ Նոյեմբերին շարք մտավ երկրի ամենախոշոր ձեռնարկությունը՝ Ստալինի անվան տեքստիլ կոմբինատը։ Կոմբինատը տարեկան կարտադրի 20 միլիոն մետր գործվածքեղեն։ Հոսանք սկսեց տալ ալբանական ժողովրդի պարծանքը՝ Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը։

Ալբանիայում արդյունաբերական արտադրանքը ավելի քան 4 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Էլեկտրաէներգիայի արտադրությունն աճել է ավելի քան 8 անգամ, քրոմի արտադրությունը՝ 8 անգամ, ածխի հանույթը՝ 15 անգամ, պղընձինը՝ 16 անգամ։ Ժողովրդական իշխանության տարիներին երկրի ցանքատարածությունն ավելացավ 50 տոկոսով։ Ռեսպուբլիկայում սովորողների թիվն ավելացել է երեք անգամ, բացվել են միքանի բարձրագույն ուսումնական հաստատություններ։

# ՊԼԱՆՆԵՐ, ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1. Վ. Ի. ԼԵՆԻՆԸ և Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ Սովետական պետության Զինված Ուժերի ստեղծողներն են:

2. Սովետական Բանակի հաղթանակները օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմների տարիներին:

3. Սովետական Միության ժողովուրդների՝ Հայրենական Մեծ պատերազմում տարած համաշխարհային պատմական հաղթանակների նշանակությունը:

4. Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային նավատորմը սովետական մարդկանց խաղաղ ստեղծագործական աշխատանքի սրբուն պահապաններն են, ժողովուրդների անվտանգության և խաղաղության հուսալի պաշտպանը:

5. Սովետական մարդկանց անձնուրաց աշխատանքը՝ Սովետական Միության տնտեսական բարգավաճման ու ռազմական հզորության հետագա աճի հիմքն է:



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին:

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Ստալինը և Սովետական Զինված Ուժերը:

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Հայրենական Մեծ պատերազմի հանճարեղ զորավարը:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ Համառոտ կենսագրության 6, 10 և 11-րդ գլուխները:

## 2. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

1. Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաների ստեղծումը՝ հիտլերյան Գերմանիայի նկատմամբ Սովետական Միության տարած համաշխարհային պատմական հաղթանակի արդյունքն է:

2. ՍՍՌՄ-ի սոցիալիստական շինարարության հարուստ փորձի օգտագործումը, Սովետական Միության բարեկամությունը և անշահախնդիր օգնությունը՝ ժողովրդա-դեմոկրատական երկրներում սոցիալիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանն է:

3. Սոցիալիստական սեկտորի հաղթանակը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ՝ ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաներում:

4. Աշխատավոր մասսաների բարեկեցության

բարձրացումը և գիտության ու կուլտուրայի զարգացման հաջողությունները ժողովրդա-դեմոկրատական երկրներում:

5. Ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների դերը սոցիալիստական հասարակարգի կառուցման և ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու համար մղվող պայքարում:


ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընկ. Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎԻ ճառը Բուխարեստում տեղի ունեցած հանդիսավոր նիստում, նվիրված Սովետական Բանակի կողմից Ռումինիայի ազատագրման 7-րդ տարեդարձին: «Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 24:

Սովետական Բանակի կողմից Բուլղարիայի ազատագրման 7-րդ տարեդարձը: «Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 11:

Բուլղարիայի ժողովրդական ռեսպուբլիկայի հնգամյակը: «Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 15:

Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները սոցիալիզմի ուղու վրա: Առանձին բրոշյուրով, Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակություն, 1950 թ.:





Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

